Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։




## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 30-ԱՄՅԱԿԸ

*Այս տարվա փետրվարի 23-ին լրանում է մեր Հերոսական Սովետական Բանակի գոյության երեսուն տարին։ Երեսուն տարի Սովետական Բանակը կանգնած է մեր Հայրենիքի ազատության և անկախության պաշտպանության դիրքում։*

*Պրոլետարիատի հանճարեղ առաջնորդներ Լենինի և Ստալինի կազմակերպած Կարմիր Բանակը դեռ քաղաքացիական պատերազմի տարիներին ջախջախեց 14 իմպերիալիստական տերությունների բանակներին, ճնշեց ներքին թշնամիներին և ամրապնդեց սովետական իշխանության հաղթանակը մեր երկրում։ Օտարերկրյա ինտերվենցիայի, իսկ հետագայում ճապոնական սամուրայների ու սպիտակֆինների դեմ մղած մարտերում կոփված մեր Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը Հայրենական Մեծ Պատերազմում ջախջախելով գերմանա-ֆաշիստական զավթիչներին ու ճապոնական*

*իմպերիալիստներին, ամբողջ աշխարհի առջև ցուցադրեցին իրենց անպարտելի ուժն ու հզորությունը, փառքով օծեցին իրենց, նվաճեցին աշխարհի ամբողջ առաջադեմ մարդկության սերն ու համակրանքը։*

*Սովետական Բանակի 30-ամյակը մեր ժողովուրդը նշում է Ստալինյան նոր հնգամյակը չորս տարում կատարելու համար ծավալված աշխատանքային աննախընթաց վերելքի պայմաններում, միջազգային այնպիսի իրադրության մեջ, երբ երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով Արևելյան ու Հարավ-Արևելյան Եվրոպայի ժողովուրդներն իրենց մոտ ստեղծել են նոր, դեմոկրատական կարգեր, իսկ ռեակցիոն իմպերիալիստական շրջանները ջղագար ճիգերով փորձում են փրկել կապիտալիզմը մոտալուտ կործանումից։*

* * *

*Կարմիր Բանակը ստեղծեցին Լենինը և Ստալինը, 30 տարի սրանից առաջ, օտարերկրյա ինտերվենտների զորքերի դեմ պայքարելու համար, որոնք օգտվելով մեր թուլությունից, փորձում էին խեղդել երիտասարդ սովետական իշխանությունը, ոչնչացնել մեր երկրի անկախությունը։ 1918 թվա-*



*կանի սկզբներին գերմանական իմպերիալիստները Սովետական Ռուսաստանի դեմ ուղղեցին իրենց զինված ուժերը։ Գերմանական զորքերը մոտեցան Նարվային և Պսկովին, սպառնալով ներխուժել Պետրոգրադ։ Երկրի վրա մահացու վտանգ կախվեց։ Կարմիր Բանակի դեռ երիտասարդ, վատ զինված ջոկատներն առաջին անգամ մտնելով պատերազմի մեջ, Պսկովի և Նարվայի տակ ջախջախիչ հարված հասցրին գերմանական զորքերին։ Հենց այդ օրն էլ, 1918 թվականի փետրվարի 23-ը, հայտարարվեց Կարմիր Բանակի ծննդյան օր։*

*Այդ ժամանակից ի վեր Կարմիր Բանակն աճել և ամրապնդվել է օտարերկրյա զավթիչների դեմ մղած պայքարում։ Բնութագրելով Սովետական Բանակը, իբրև նոր տիպի բանակ, ընկեր Ստալինը մատնանշել է նրա երեք առանձնահատկությունները։ Առաջին, որ «նա ազատագրված բանվորների և գյուղացիների բանակն է, նա Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բանակն է, պրոլետարիատի դիկտատուրայի բանակը»։ Երկրորդ, որ նա մեր երկրի ժողովուրդների միջև եղբայրության բանակն է... Նրա ամբողջ էությունը, նրա ամբողջ կառուցվածքը խարսխվում է մեր երկրի ժողովուրդների միջև բարեկամության*

կապերի ամրապնդման վրա, ճնշված ժողովուրդների ազատագրության գաղափարի վրա, Սովետական Միության կազմի մեջ մտնող սոցիալիստական ռեսպուբլիկաների ազատությունը և անկախությունը պաշտպանելու գաղափարի վրա»։ Մեր բանակի երրորդ առանձնահատկությունը «մեր ամբողջ Կարմիր Բանակը տոգորող ինտերնացիոնալիզմի ոգին է, ինտերնացիոնալիզմի զգացմունքները»։

Քաղաքացիական պատերազմում Կարմիր Բանակը պաշտպանեց մեր Հայրենիքն ընդդեմ Անտանտայի զորքերի, վռնդելով նրանց մեր երկրի սահմաններից։ Կարմիր Բանակի հաղթանակը քաղաքացիական պատերազմում, Սովետական Միության ժողովուրդների համար ապահովեց երկարատև խաղաղություն և ստեղծագործ աշխատանքի հնարավորություն։ Խաղաղ շինարարության ժամանակաշրջանում մեր երկրի ժողովուրդները, Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ստեղծեցին սոցիալիստական արդյունաբերություն, կոլխոզային գյուղատնտեսություն, զարգացրին գիտությունը և կուլտուրան։

Բայց մշտապես հիշելով կապիտալիստական շրջապատման մասին, սովետական



ժողովուրդը երբեք չէր մոռանում մեր Հայրենիքի վրա թշնամիների նոր հարձակման հնարավորությունը։ Ուստի արդյունաբերության և գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացմանը զուգընթաց, նաև աճում էր Սովետական Միության ռազմական հզորությունը։ Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Կարմիր Նավատորմը հանդերձավորվում էին ժամանակակից մարտական տեխնիկայով։

***

Ռեակցիոն իմպերիալիստական տարրերն ամբողջ աշխարհում, մանավանդ Անգլիայում, ԱՄՆ-ում և Ֆրանսիայում, նախապատերազմյան տարիներին հատուկ հույսեր էին դնում հիտլերյան Գերմանիայի ու ֆաշիստական Ճապոնիայի վրա իբրև այնպիսի ուժերի, որոնք ամենից ավելի ընդունակ էին հարված հասցնելու Սովետական Միությանը և դրանով իսկ ամրապնդելու կապիտալիզմի ընդհանուր դրությունը։ Եվ ահա, 1941 թվականի հունիսի 22-ին հիտլերյան Գերմանիայի հսկայական մոտո-մեքենայացված բանակը ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա։

Ֆաշիստական Գերմանիայի հարձակումը խախտեց մեր շինարարության խաղաղ ժա-

մանակաշրջանը։ Հայրենական Մեծ պատերազմը Սովետական Միության համար եղավ մեծագույն փորձություն, որովհետև այդ պատերազմը «ամենադաժանն ու ամենածանրն էր մեր Հայրենիքի պատմության մեջ երբևիցե տեղի ունեցած բոլոր պատերազմներից» (Ստալին)։

Աշխարհի ոչ մի պետություն և ոչ մի բանակ չէր դիմանա այն հսկայական զրկանքներին, որ կրեց Հայրենական պատերազմում մեր բազմազգ պետությունը։ Ընկեր Մոլոտովը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի մասին Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված իր զեկուցման մեջ ասաց.

«Մենք բոլորս հիշում ենք, թե մեր ժողովուրդն ինչպիսի աներևակայելի դժվարություններ կրեց պատերազմի տարիներին։

Բավական է ասել, որ հիտլերյան օկուպացման ենթարկվեց սովետական մի տերիտորիա, որի բնակչությունը պատերազմից առաջ կազմում էր 88 միլիոն մարդ։ Այդ տերիտորիայի վրա արտադրվում էր ամբողջ երկրի արդյունաբերական արտադրանքի 33 տոկոսը։ Հիտլերականները օկուպացրել էին մի տերիտորիա, որի ցանքատարածությունները կազմում էին Սովե-



տական Միության ցանքատարածություններ ի 47 տոկոսը, և որտեղ գտնվում էր անասունների ամբողջ գլխաքանակի մոտ կեսը»։

Մեկ կողմից ռազմաճակատի պահանջն օրեց-օր աճում էր, մոտորների պատերազմը յուրաքանչյուր ժամ կլանում էր հսկայական քանակությամբ զենք, զինամթերք ու վառելիք, իսկ մյուս կողմից գերմանա-ֆաշիստական հորդաները, օգտվելով ժամանակավոր առավելությունից, խորանում էին մեր տերիտորիայի խորքը, նվաճում էին արդյունաբերության ու գյուղատնտեսության ռեսուրսները։ Դրանք ամենադաժան ծանր օրերն էին, երբ թշնամին գտնվում էր Մոսկվայի, Լենինգրադի, Ստալինգրադի տակ, Ղրիմում, Մոզդոկի մոտ։ «Խոսքը վերաբերում է,— ասաց ընկեր Ստալինը,— Սովետական պետության կյանքին և մահվանը, այն բանին, թե Սովետական Միության ժողովուրդները ազատ պետք է լինեն, թե՞ ընկնեն ստրկության մեջ»։

Չնայած մեծ դժվարություններին ու զոհերին, սովետական հերոս ժողովուրդը պատերազմից դուրս եկավ հաղթությամբ։ Մեր բանվոր դասակարգի, կոլխոզային գյուղա-

ցիության և սովետական ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքի շնորհիվ, Սովետական Բանակն ու Ռազմա-Ծովային Նավատորմն ստացան ամեն բան, ինչ անհրաժեշտ էր թշնամու դեմ հաղթանակ տանելու համար։

***

Ինչո՞ւ մինչև ատամները զինված հիտլերյան բանակը, որն իր կողմում ուներ եվրոպական համարյա բոլոր երկրների ռեսուրսները, հասնելով մինչև Մոզդոկ, Ստալինգրադ, կանգնեցվեց, հետ շպրտվեց մեր տերիտորիայից և ջախջախվեց իր սեփական որջում։ Որո՞նք են սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ուժի ու հզորության աղբյուրները։

Սովետական Բանակի ուժն ու կենսունակությունը, ամենից առաջ Սովետական Սոցիալիստական կարգերն են։ Սոցիալիստական կարգերի շնորհիվ, մեր Հայրենիքը պատմականորեն ամենակարճ ժամանակամիջոցում հետամնաց երկրից դարձավ հզոր ինդուստրիալ տերություն, որն արդեն երկրորդ հնգամյակի վերջում արդյունաբերական արտադրանքի քանակով առաջին տեղը գրավեց Եվրոպայում։ 1940 թվականին մեր երկրի խոշոր արդյունաբերությունը տալիս էր 12



անգամ ավելի արտադրանք, քան 1913 թվականին։ Սովետական կարգերի շնորհիվ մեր գյուղատնտեսությունը, կոլխոզներում միավորվելով, դարձավ առաջավոր մեքենայացված սոցիալիստական տնտեսություն։

Երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիան և գյուղատնտեսության կոլեկտիվացումը, սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում, նյութական և բարոյական-քաղաքական նախադրյալներ ստեղծեցին մեր Հայրենիքի հաջող պաշտպանության համար։ Սոցիալիստական կարգերը հնարավորություն տվին մոբիլիզացնելու մեր արդյունաբերության արտադրական կարողությունները, բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների եռանդը և գյուղատնտեսության նյութական ռեսուրսները, ռազմական ձևով վերակառուցելու տրանսպորտը՝ ռազմաճակատի և թիկունքի անընդմեջ մատակարարման համար։

Ընկ. Ն. Վոզնեսենսկին «ՍՍՌՄ ռազմական էկոնոմիկան Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում» իր հիանալի գրքի մեջ այդ առթիվ գրում է. «Հայրենական պատերազմի առաջին կիսամյակը (1941 թ. երկրորդ կեսը) բնութագրվում է ՍՍՌՄ արտադրողական ուժերի մեծ տեղափոխությամբ

դնպի արևելք, որ ղեկավարում էր Պաշտպանության ստալինյան Պետական Կոմիտեն։ Տեղաշարժվում էին միլիոնավոր մարդիկ, տեղափոխվում էին հարյուրավոր ձեռնարկություններ, տասնյակ հազարավոր դազգահներ, գլանիչ հաստոցներ, մամլիչներ, մուրճեր, տուրբիններ ու մոտորներ։ 1941 թվականի ընդամենը երեք ամսվա ընթացքում ՍՍՌՄ արևելյան շրջաններն էվակուացվեց 1360 խոշոր, գլխավորապես ռազմական ձեռնարկություն...»։

Այս ամենը հնարավոր եղավ միմիայն սովետական կարգերի շնորհիվ, և այդ մեր փառապանծ Սովետական Բանակի ու Ռազմա-Ծովային Նավատորմի ուժի և հզորության աղբյուրներից մեկն է։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Ռևոլյուցիան ոչնչացրեց մեր երկրում ազգային ու ռասսայական անհավասարությունը։ Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ ոչնչացվեց նախկին ցարական Ռուսաստանի ծայրամասերի ժողովուրդների միջև նաև փաստացի անհավասարությունը կուլտուրական ու տնտեսական տեսակետից։ Բազմազգ Սովետական պետությունը դարձավ եղբայրական ժողովուրդների մի մեծ ընտանիք, որը համե-



րաշխորեն կառուցում է կոմունիստական հասարակակարգ։ ՍՍՌՄ ժողովուրդների այդ ստալինյան բարեկամությունն էլ հենց, որը հանդիսանում է Սովետական Բանակի ուժի և հզորության աղբյուր, ապահովեց հաղթանակը Հայրենական պատերազմում։

Ժողովուրդների ստալինյան բարեկամությունը պատերազմի ընթացքում արյամբ ամրապնդվեց և է՛լ ավելի ուժեղացավ։ Ռուս մեծ ժողովրդի ղեկավարությամբ ՍՍՌՄ բոլոր ժողովուրդները ոտքի ելան պաշտպանելու իրենց սոցիալիստական Հայրենիքը։ Պատերազմն է՛լ ավելի համախմբեց զանազան ազգությունների սովետական մարդկանց, նրանց է՛լ ավելի հարազատացրեց իրենց ավագ եղբոր՝ ռուս ժողովրդի և միմյանց հետ։

Երբ թշնամին գտնվում էր Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լիտվայի տերիտորիայում, անդրկովկասյան և միջին ասիական ռեսպուբլիկաները դեռ հեռու էին անմիջական վտանգից։ Բայց չնայած դրան, այդ ռեսպուբլիկաների ժողովուրդները խորապես ըմբռնեցին ընկեր Ստալինի խոսքերը, որ թշնամին հավասարապես սպառնում է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդներին, որ Հայրենիքի պաշտպանությունը բոլոր ազնիվ սովետական հայրենասերների ընդհանուր գործն է։

Հերոս քաղաքներ Ստալինգրադի, Սևաստոպոլի, Լենինգրադի համար, Ղրիմում, Դոնբասում, Մերձբալթիկայում արիաբար մարտնչում էին մեր երկրի բոլոր ժողովուրդների զավակները։

Հայրենիքին սպառնացող վտանգի այդ ահեղ պահին սովետական մյուս ժողովուրդների հետ միասին թշնամու դեմ պայքարի ելավ նաև հայ ժողովուրդը։ Մեծ Ստալինի կոչով ռազմաճակատ մեկնեցին հայ ռազմիկներից կազմված զորամասեր։ Դրանցից մեկը, փառաբանված 89-րդ Թամանյան Կարմրադրոշ դիվիզիան մարտական մեծ ուղի անցավ Կովկասյան լեռներից մինչև Բեռլին, մի քանի անգամ արժանանալով մեծ Ստալինի շնորհակալություններին։

Հիտլերյան զավթիչների դեմ մղված մարտերում հազարավոր հայ սպաներ, մարտիկներ ու կարմիրնավատորմայիններ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով։ Սովետական Բանակի ստալինյան գեներալիտետի կազմում կան հայ ժողովրդի 50-ից ավելի լավագույն զավակներ, Սովետական Միության Հերոսների փառապանծ ընտանիքում՝ 100-ից ավելի հայ հերոսներ։ Հայաստանի աշխատավորները թիկունքում անձնվեր աշխատանքով օգնում



էին ռազմաճակատին։ Սովետական Հայաստանը, ինչպես որ միութենական մյուս ռեսպուբլիկաները, դարձել էր զինանոց Սովետական Բանակի համար։

Հայրենական Մեծ պատերազմում հաղթեց սովետական հասարակական ու պետական կարգը, որ հիմնված է ժողովուրդների բարեկամության վրա, հաղթեցին մեր զինված ուժերը, հաղթեց ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան բարեկամությունը։ Բոլոր ռասաների և ազգերի իրավահավասարության սովետական իդեոլոգիան հաղթեց գազանային նացիոնալիզմի և ռասայական ատելության հիտլերյան իդեոլոգիային։ ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան բարեկամությունն օրինակ է ծառայում ամբողջ առաջադեմ մարդկության համար, հանդիսանում է սովետական ազգային հպարտության աղբյուրը և վառ փարոս ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդների համար։

⁂

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի բոլոր հաղթանակների կազմակերպողն ու ոգեշնչողը եղավ Լենին-Ստալինի փառապանծ պարտիան, որն աճեցրեց և ամրապնդեց Սովետական Բանակի հզորությունը, ստեղծեց բոլոր հնարավորու-

թյունները ու նախադրյալները նրա հաղթանակի համար։

Հայրենական պատերազմի տարիներին, երբ մեր Հայրենիքի վրա ահեղ վտանգ կախվեց, երբ թշնամին սպառնում էր սոցիալիզմի բոլոր նվաճումներին, պարտիան ֆաշիստական զավթիչների դեմ պայքարի հանեց ամբողջ ժողովրդին և նրան հասցրեց պատմական հաղթանակի։ Կոմունիստները Բանակի և Նավատորմի շարքերում ցույց տվին հերոսության ու անձնվիրության օրինակներ։ Բանակի և Նավատորմի պարտիական կազմակերպությունները ամրապնդեցին նրա շարքերը, Սովետական Բանակը դարձրին անպարտելի ուժ։

Ռազմաճակատի և թիկունքի ամենապատասխանատու հատվածներում կոմունիստներն անդուլ կերպով աշխատում էին, մարտնչում և կազմակերպում հաղթանակը թշնամու դեմ։ Պարտիան Բանակի և Նավատորմի շարքերը համալրում էր լավագույն կոմունիստներով։ Մոսկվայի պարտիական կազմակերպությունը պատերազմի միայն առաջին հինգ ամսում Սովետական Բանակի շարքերն ուղարկեց 100 հազար կոմունիստ։

Ընկեր Ստալինը սովետական ռազմական տակտիկայի ու ստրատեգիայի մեծագույն



հիմնադիրն է։ Ընկեր Ստալինի ռազմական հանճարը փայլուն կերպով դրսևորվեց դեռևս քաղաքացիական պատերազմի տարիներին, ինտերվենտների դեմ մղված պայքարի ճակատներում, որտեղ նրա ռազմական հմտությունն ու կազմակերպական տաղանդը միշտ փրկում էին դրությունը և ապահովում հաղթանակը։

Սովետական Բանակի մեծագույն օպերացիաները Հայրենական պատերազմի ռազմաճակատներում — Մոսկվայի, Ստալինգրադի, Լենինգրադի տակ, Կուրսկի աղեղում, Ղրիմում, Դնեպրի շրջանում, Վիսլայի և Օդերի վրա, Բեռլինում հիտլերյան հրոսակախմբերի ջախջախման օպերացիաները ստալինյան ռազմական ստրատեգիայի փայլուն օրինակներ են, ժամանակակից վիթխարի ռազմական տեխնիկայի ու հսկայական բանակների գործողությունների չգերազանցված զուգորդման և թշնամու դեմ հաղթանակը հմտորեն կազմակերպելու օրինակներ։

Հայրենական պատերազմի ռազմաճակատներում բոլոր խոշոր օպերացիաների պլանները ընկեր Ստալինն էր մշակել։ Միայն 1944 թվականին ընկեր Ստալինի մշակած պլանով զանազան ստրատեգիական կետերում ու տարբեր ժամանակ հիտլերյան

բանակին հասցվեցին տասը [illegible] հարվածներ, որոնց շնորհիվ գերմանա-ֆաշիստական օկուպանտները խայտառակ վռնդվեցին մեր սրբազան հողից։

Սովետական Բանակի և Նավատորմի մարտիկները, սերժանտները, սպաներն ու գեներալները Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Գեներալիսիմուս ընկեր Ստալինի գլխավորությամբ խիզախության ու հերոսության հրաշքներ էին ցույց տալիս։ Զորքի բոլոր տեսակների՝ հրետանու, տանկերի, ինքնաթիռների, հետևակի այն նոր տակտիկայի ու ստրատեգիայի նախաձեռնությունը, որ Սովետական Բանակն ու Նավատորմը գործադրեցին Հայրենական պատերազմում և որոնք փայլուն կերպով արդարացրին իրենց, պատկանում է մեր ժամանակի մեծագույն ստրատեգ ընկեր Ստալինին։

Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի երեսնամյակի մասին իր զեկուցման մեջ ընկ. Մոլոտովն ասաց. «Այն փաստի ընդունման մեջ, որ սովետական ժողովուրդը Եվրոպայի քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ջարդարարներից, ամբողջ աշխարհի ժողովուրդները տեսնում են նաև կոմունիզմի առաջնորդ և Սովետական Միության մեծ զորավար



Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի մատուցած բացառիկ ծառայությունները»։

Ընկեր Ստալինը Հայրենական պատերազմի ժամանակ կարողացավ ընտրել, դաստիարակել և պատասխանատու պոստերում առաջ քաշել նոր, ղեկավար բոլշևիկյան ռազմական կադրեր, որոնք իրենց ուսերի վրա կրեցին պատերազմի ամբողջ ծանրությունը, նրանց զինեց ամենաառաջավոր ռազմական գիտությամբ — հաղթելու ստալինյան գիտությամբ։

Ընկեր Ստալինը մշտապես և ուշադիր հետևում է Սովետական Բանակի և Նավատորմի աճմանը։ Ստալինը հանճարեղ կերպով ղեկավարեց մեր Բանակի և Նավատորմի մարտական գործողությունները Հայրենական պատերազմի ընթացքում։ Նրա իմաստուն ղեկավարությամբ Սովետական Բանակն ու Նավատորմը այսուհետև էլ կկատարելագործվեն ու կամրապնդվեն և նրանց հետ միասին կամրապնդվի մեր մեծ Սովետական Միության ցամաքային ու ծովային սահմանների անվտանգությունը։

Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Բանակն ու Ռազմա-Ծովային Նավատորմը պատվով կատարեցին իրենց վրա դրված խնդիրները, պաշտպանեցին մեր

Հայրենիքի ազատությունն ու անկախությունը և Եվրոպայի ժողովուրդներին օգնեցին ֆաշիստական լծից ազատագրվելու գործում:

Այժմ, հետպատերազմյան խաղաղ շինարարության ժամանակաշրջանում մեր Բանակն ու Նավատորմը արթուն պահպանում են սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքը, հուսալիորեն պաշտպանելով մեր երկրի պետական շահերը, նրա սահմանների անձեռնմխելիությունը:

Սովետական Միության զինված ուժերը, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին փառապանծ Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 30-ամյակը դիմավորում են սերտորեն համախմբված բոլշևիկյան պարտիայի և հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի շուրջը, որի իմաստուն ղեկավարությամբ մեր երկիրը վստահորեն առաջ է ընթանում դեպի նորանոր հաջողություններ, դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը:

*

## ԴԵՊԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔ

Օրերս մամուլում հրապարակվեց ՍՍՌ Միության Պետպլանի հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման պետական պլանի կատարման 1947 թվականի արդյունքների մասին: Այդ հաղորդագրության պերճախոս թվերի մեջ տրված է մեր սոցիալիստական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման ուղղությամբ միլիոնավոր սովետական մարդկանց մեկ տարվա անձնվեր աշխատանքի հանրագումարը:

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից անմիջապես հետո սովետական ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինն ասաց.

«Մենք պետք է ամենակարճ ժամանակամիջոցում բուժենք մեր երկրին թշնամու հասցրած վերքերը և վերականգնենք ժողովրդական տնտեսության զարգացման մինչ-

պատերազմյան մակարդակը, որպեսզի ամենամոտիկ ժամանակում զգալիորեն գերազանցենք այդ մակարդակը, բարձրացնենք ժողովրդի նյութական բարեկեցությունը և է՛լ ավելի ամրապնդենք Սովետական պետության ռազմա-տնտեսական հզորությունը»։

Ընկեր Ստալինի այս խոսքերը մեր ժողովրդին ոգեշնչեցին ստեղծագործական մեծ աշխատանքի համար։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջին երկու տարվա պլանները մեր արդյունաբերությունը հաջողությամբ կատարեց։ ՍՍՌՄ-ի արդյունաբերության համախառն արտադրանքը 1947 թվականին՝ նախորդ տարվա համեմատությամբ՝ աճեց 22 տոկոսով, ըստ որում 1947 թ. չորրորդ եռամսյակում արդյունաբերության արտադրանքի մակարդակը հասավ մինչպատերազմյան 1940 թվականի միջին եռամսյակային մակարդակին։ Այս փաստը վկայում է, որ ՍՍՌՄ-ի արդյունաբերությունը բոլոր հնարավորություններն ունի արդեն այս տարի մինչպատերազմյան մակարդակը գերազանցելու համար։

Մեծ հաջողություններ է ձեռք բերել նաև սոցիալիստական գյուղատնտեսությունը, որը կոչված է մեր երկրում ստեղծելու սննդամթերքների առատություն և արդյունաբերու-



թյանը մատակարարելու անհրաժեշտ հումք։ Մեր կոլխոզային գյուղացիությունը, իրագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը, հաղթահարեց 1946 թվականի երաշտի հետևանքով առաջացած դժվարությունները և անցյալ տարի հասավ բարձր բերքի։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1947 թվականին՝ նախորդ տարվա համեմատությամբ՝ աճեց 32 տոկոսով, ըստ որում հողագործության արտադրանքը 48 տոկոսով— հացահատիկային կուլտուրաների համախառն բերքն աճեց 58 տոկոսով, բամբակինը 21 տոկոսով, կարտոֆիլինը՝ 30 տոկոսով, իսկ շաքարի ճակնդեղի բերքը համարյա եռապատկվեց։

Ինչպես և արդյունաբերության բնագավառում, ուշագրավ է այն փաստը, որ 1947 թվականին ՍՍՌՄ գյուղատնտեսությունը հասավ հացահատիկային կուլտուրաների բերքատվության մինչպատերազմյան մակարդակին։ Այդ՝ մեր պարտիայի, Սովետական պետության և կոլխոզային գյուղացիության մեծ հաղթանակն է։

Հետպատերազմյան հնգամյակի երկու տարվա ընթացքում հսկայական կապիտալ աշխատանքներ են կատարվել դաշտամշակման

օկուպացիայի հետևանքով ավերված արդյունաբերական ձեռնարկությունները, երկաթուղիները, ՄՏԿ-ներն ու սովխոզները վերականգնելու և նորերը կառուցելու ուղղությամբ։ Երկու տարվա ընթացքում կառուցվել, վերականգնվել և շահագործման է հանձնվել մոտ 1900 պետական ձեռնարկություն։

Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական հաջողությունները, անցյալ տարի նվաճված առատ բերքը պարտիայի և կառավարության հնարավորություն տվին 1947 թվականի դեկտեմբերի երկրորդ կեսից վերացնելու քարտային սիստեմն ու ազատ վաճառքի բարձր գները և անցնելու ապրանքների վաճառքին միասնական պետական գներով, զգալիորեն իջեցնելով հացի և կրուպեղենի նորմային գները։ Միայն պետական մանրածախ գների իջեցումից Սովետական Միության աշխատավորներն այս տարվա ընթացքում կստանան 57 միլիարդ ռուբլի զուտ օգուտ։

Քարտային սիստեմը վերացնելու հետ միասին մեր երկրում կիրառվեց նաև դրամական ռեֆորմը, որի շնորհիվ ամրապնդվեց սովետական ռուբլին, բարձրացավ նրա գնողունակությունը։ Հնգամյակի երկու տար-



վա տնտեսական-քաղաքական հաջողություններն առավել բարենպաստ պայմաններ են ստեղծում սովետական ժողովրդի բարեկեցության հետագա աճման համար։

Այլ պատկեր է ներկայացնում կապիտալիստական աշխարհը, որը պատերազմից հետո դեռ ուշքի չի եկել և չունի վստահություն ապագայի նկատմամբ, որտեղ վերահաս տնտեսական ճգնաժամի երկյուղի տակ ռեակցիոն տարրերը հորինում են ագրեսիայի նոր պլաններ իբրև ստեղծված ծանր դրությունից դուրս գալու միակ միջոց, որտեղ հատկապես ծանր է իրավազուրկ փոքր ժողովուրդների դրությունը։ Այնինչ Սովետական Միության մեջ տնտեսական վերելքն ու բարգավաճումը ընդհանուր երևույթ են հանդիսանում, ընդգրկելով բոլոր ռեսպուբլիկաները, երկրամասերն ու մարզերը։

Դիմենք մեր ռեսպուբլիկայի օրինակին։

Հայ ժողովուրդը մեծ ոգևորությամբ ձեռնամուխ է եղել նոր հնգամյակի կատարմանը, որը նախատեսում է մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա բուռն աճում։ Հնգամյակի առաջին տարվա՝ 1946 թվականի պլանը արդյունաբերության բնագավառում կատարվեց հաջողությամբ։ Արդյունաբերու-

թյան հաջողությունները է՛լ ավելի ուշագրավ եղան 1947 թվականին, երբ մտնելով Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, Ռեսպուբլիկայի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ արդեն մինչև Մեծ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 7-ը գերակատարեցին իրենց տարեկան արտադրական պլանները։ Այդպիսի առաջավորների թվին են պատկանում Տեղական և Տեքստիլ արդյունաբերության մինիստրությունների, Արհեստագործական կոոպերացիայի մի շարք ձեռնարկություններ, Երևանի ավտոդողերի, դազգահաշինական, կաբելի, օճառի գործարանները, Կիրովի անվան կահույքի ֆաբրիկան, Կոշիկի 3-րդ գործարանը, Կոնսերվտրեստի և Հայպանիրտրեստի ձեռնարկությունները։ Իսկ ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունը 1947 թվականի պլանը կատարեց ժամկետից շուտ— Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելու 27-րդ տարեդարձին՝ նոյեմբերի 29-ին։

Ընդհանուր առմամբ Հայկական ՍՍՌ արդյունաբերությունն իր համախառն արտադրանքի 1947 թվականի պլանը կատարեց 107,6 տոկոսով, նախորդ տարվա համեմա-



տությամբ տալով 27,1 տոկոս աճ։ Իսկ 1940 թվականի համեմատությամբ արդյունաբերության 1947 թ. համախառն արտադրանքն աճեց 34 տոկոսով։

Սովետական Հայաստանի արդյունաբերության առաջընթացը բնութագրվում է արտադրանքի կարևորագույն տեսակների սիստեմատիկ աճումով։ Այսպես օրինակ, 1947 թվականին՝ նախորդ տարվա համեմատությամբ՝ էլեկտրոէներգիայի արտադրությունն աճեց 17 տոկոսով, պղնձահանքի հանույթը՝ 11 տոկոսով, մետաղահատ դազգահների արտադրությունն ավելի քան կրկնապատկվեց, ավտոանվակալների արտադրությունն աճեց երկու և կես անգամ, կաբելային պարագաներինը՝ ավելի քան վեց անգամ, սուպերֆոսֆատային պարարտանյութերինը՝ համարյա երեք անգամ։ Աճել է նաև ցեմենտի արտադրությունը՝ 11 տոկոսով, պղնձարջասպինը՝ 14 տոկոսով, մետաղյա ամանեղենինն ու մահճակալներինը՝ կրկնակի չափով, բամբակե գործվածքներինը՝ 45 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 56 տոկոսով, գուլպաներինը՝ 48 տոկոսով, տրիկոտաժեղենինը 35 տոկոսով, կոշկեղենինը՝ 97 տոկոսով, ծխախոտինը՝

44 տոկոսով, օճառինը՝ 20 տոկոսով և այլն։

Արտադրանքի մինչպատերազմյան ասորտիմենտը վերականգնելու հետ միասին, Սովետական Հայաստանի արդյունաբերությունը 1947 թվականին սկսեց տալ արտադրանքի մի շարք նոր տեսակներ— յուրացվեց ուժային տրանսֆորմատորների, էլեկտրոդեներատորների, կաբելային պարագաների, էլեկտրաչափիչ սարքերի, մետաքսյակրեպային գործվածքների, շաքարավազի արտադրությունը։

1947 թվականին զգալիորեն բարձրացավ աշխատանքի կազմակերպումը մեր արդյունաբերական ձեռնարկություններում։ Մի շարք գործարաններ ու ֆաբրիկաներ բարելավեցին իրենց աշխատանքը, ինչպես օրինակ Կիրովի անվան կոմբինատը և Լենինականի Տեքստիլ կոմբինատը, որոնք հաղթահարելով իրենց նախկին հետամնացությունը, սկսել են ամսե-ամիս կատարել արտադրական պլանները։

Արդյունաբերության աշխատանքի բարելավումը, սոցիալիստական մրցության և ստախանովյան շարժման ծավալումը հասցրին աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի



իջեցման։ Արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի արտադրողականությունը 1947 թվականին՝ նախորդ տարվա համեմատությամբ՝ բարձրացավ 15,6 տոկոսով։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության մեջ 1947 թվականի 11 ամսում կազմեց միջին հաշվով 2,1 տոկոս։

Մեծ հաջողություններ է ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումով ոգեշնչված, Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը 1947 թվականին ավելի լավ կազմակերպեց գյուղատնտեսական աշխատանքները, և կատարելով դրանք ավելի սեղմ ժամկետներում, օգտագործելով կլիմայական բարենպաստ պայմաններն ու առաջավոր ագրոտեխնիկան, հասավ առատ բերքի։ Հացահատիկային և այլ կուլտուրաների ավելի կազմակերպված բերքահավաքն ու կալսումը զգալիորեն նվազեցրին կորուստները։ Այս բոլորի հետևանքով հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1947 թվականին, 1946 թվականի համեմատությամբ, աճեց համարյա մեկ երրորդով։ Ռեսպուբլիկայի կոլխոզնիկները, իրագործելով ժողո-

վարդների առաջնորդ ընկեր Ստալինին տըված իրենց խոստումը, պետական պարտավորությունների պլանը կատարեցին ժամկետից 45 օր շուտ։

Կերի բազան ամրապնդելու, անասնաբուծական ապրանքային ֆերմաների աշխատանքը բարելավելու և լայն գոմաշինարարության շնորհիվ 1947 թվականին ձեռք բերվեց նաև կոլխոզային անասնաբուծության նոր վերելք։ Աճել է անասունների գլխաքանակը և բարելավվել է նրանց ցեղային կազմը։

Գյուղատնտեսության առաջավորները, որոնք իրենց անձնվեր աշխատանքով բարձր ցուցանիշներ են ձեռք բերել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացնելու գործում, արժանացան բարձրագույն պարգևի՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։ Գյուղատնտեսության շատ ու շատ առաջավորների աշխատանքը նշվել է կառավարական պարգևներով։

Ձեռք բերված հաջողությունները մեր կոլխոզային գյուղացիությանը ոգևորում են աշխատանքային նորանոր սխրագործությունների համար։ Արդեն անցյալ տարվա աշնա-



նացանի և գյուղատնտեսական մյուս աշխատանքների հաջողությունը երաշխիք է ստեղծում ընթացիկ տարվա բարձր բերքի համար։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի անցած երկու տարիները եղան նոր շինարարության լայն ծավալման տարիներ։ Երկու տարվա ընթացքում մեր ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման են հանձնվել մի շարք նոր արդյունաբերական ձեռնարկություններ՝ Ալավերդու սուպերֆոսֆատի գործարանը, Համամլուի շաքարի գործարանը, Երևանի մահուդի գործարանը, Լայն սպառման մետաղյա իրերի, Հախճապակյա ամանեղենի գործարանները, էլեկտրալուսավորիչ պարագաների գործարանը և այլն։ Արագ թափով կատարվում է մի շարք խոշոր օբեկտների շինարարությունը, որոնք ռեսպուբլիկայի համար ունեն բացառիկ կարևոր ժողովրդա-տնտեսական նշանակություն։ Հիշատակման արժանի են Սևանի և Գյումուշի հիդրոկայանների, Քաջարանի կոմբինատի, Կիրովականի ազոտի գործարանի և այլ օբեկտների, ինչպես նաև ստորին Ձանգվի ու Թալինի ոռոգիչ ջրանցքների շինարարությունը, Արազդայանի տափաստանի ցամաքեցումն ու ոռոգումը։

Ռեսպուբլիկայում կատարվել է բնակա-

բնակարանային լայն շինարարություն, մասնավորապես հայրենիք վերադարձած հայերին տեղավորելու համար։ Միայն վարկերի հաշվին, չհաշված պետական ներդրումների միջոցով կատարվող բնակարանային շինարարությունը, որը նույնպես զգալի չափեր է կազմում, երկու տարվա ընթացքում կառուցվել է ավելի քան 2.500 տուն։

Ընթացիկ տարում ժողովրդական տնտեսության առջև մեծ և պատասխանատու խնդիրներ են կանգնած։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, որոնք ջերմորեն արձագանքեցին փառապանծ լենինգրադցիների կոչին՝ հնգամյակը չորս տարում կատարելու վերաբերյալ, 1948 թվականին իրենց աշխատանքը ծավալում են այդ լոզունգով։ Հնգամյակի կատարումը չորս տարում — ռեալ գործ է, որն ապացուցվում է հնգամյակի առաջին երկու տարվա պլանների հաջող իրագործումով։ Թե՛ արդյունաբերության և թե՛ գյուղատնտեսության մեջ կան անսպառ ռեզերվներ, որոնք հետզհետե հանդես են գալիս պլանների կատարման ընթացքում։ Այդ ռեզերվները երևան բերելը և ժողովրդական տնտեսության կարիքների համար ծառայեցնելը առաջնահերթ խնդիր է։



Ուստի հարկավոր է առաջ մղել հետ մընացող ձեռնարկություններն ու կոլխոզները, հասցնել դրանք առաջավորների մակարդակին, օգտագործել բոլոր ներքին հնարավորությունները, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի քանակն ավելացնելու համար։ Անհրաժեշտ է արդյունաբերության մեջ լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունն ու ստախանովյան շարժումը՝ աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, սարքավորման ու ագրեգատների օգտագործումը բարելավելու, հումքն ու կիսաֆաբրիկատները խնայողությամբ ծախսելու, արտադրանքի որակը բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու նպատակով։

Գյուղատնտեսության բնագավառում հիմնական խնդիր է գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի հետագա ինտենսիֆիկացիան, դաշտավարական կուլտուրաների ու այգեգործության բերքատվության և կոլխոզային անասնաբուծության մթերատվության բարձրացումը։ Դրա համար անհրաժեշտ է ժամանակին նախապատրաստել և որակական բարձր ցուցանիշներով կատարել գարնանային դաշտային

աշխատանքները, պահպանելով գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի ու մշակման բոլոր ագրոտեխնիկական կանոնները, լավագույն ձևով կազմակերպել բերքահավաքը, վճռական պայքար մղել կորուստների դեմ։

Մեր ժողովուրդը քաղաքական և աշխատանքային մեծ վերելք է ապրում։ Բոլշևիկյան պարտիայի և սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, օգտագործելով համաժողովրդական սոցիալիստական մրցության փորձված մեթոդը, մեր երկրի աշխատավորներն ընթացիկ տարում նոր հաղթանակներ կնվաճեն ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, է՛լ ավելի կամրապնդեն մեր Հայրենիքի տնտեսական և քաղաքական հզորությունը։

Ա. ԶՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ
(Հայկական ՍՍՌ Պետպլանի նախագահի տեղակալ)

---

# Ի՞ՆՉ ՈՐՈՇԵՑ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՉՈՐՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

1948 թվականի հունվարի 30-ից մինչև փետրվարի 4-ը, համաժողովրդական ուշադրության պայմաններում, տեղի ունեցավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան։

Սովետական Միության պետական իշխանության գերագույն օրգանը բացառիկ միաձնության մթնոլորտում, բոլշևիկյան գործարարությամբ, մանրամասն քննության առավ և հաստատեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության 1948 թվականի պետական բյուջեն—մեր պետության ֆինանսական պլանը։

ՍՍՌՄ պետական բյուջեն, որը հաստատվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիայի կողմից, մեր Հայրենիքի հզորացման, աշխատավորների նյութական բարեկեցության հետագա վերելքի ծավալուն պլանն է, որն իրեն նպատակ է դնում ապահովել ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյակի

երրորդ տարվա պլանով նախատեսված բոլոր միջոցառումների ֆինանսավորումը:

Մեր երկրի բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի քրտնաջան աշխատանքի շնորհիվ տարեց-տարի աճում և ամրապնդվում է ՍՍՌՄ պետական բյուջեն:

ՍՍՌՄ պետական բյուջեն անցյալ տարի կատարվեց ծախսերի նկատմամբ եկամուտների 24 միլիարդ գերազանցումով, ընդ որում պետական բյուջեի եկամուտները 1946 թվի համեմատությամբ աճեցին 18,4 տոկոսով:

ՍՍՌՄ 1946 թվի պետական բյուջեն կատարված է եկամուտների գծով՝ 325,4 միլիարդ ռուբլի գումարով և ծախսերի գծով՝ 307,5 միլիարդ ռուբլի գումարով: Եկամուտների գերազանցումը ծախսերի նկատմամբ կազմում է 17,9 միլիարդ ռուբլի:

1947 թվին մենք ունեցել ենք բյուջեի զգալի աճ 1946 թվի համեմատությամբ: 1947 թվի բյուջեի եկամուտները 1946 թվի համեմատությամբ աճել են 59,8 միլիարդ ռուբլով, իսկ ծախսերը՝ 53,7 միլիարդ ռուբլով:

ՍՍՌՄ 1948 թվականի պետական բյուջեն անսահման հայրենասիրությամբ և օրինական հպարտությամբ է լցնում սովետական



մարդկանց սրտերը: Եկամուտների գծով նոր բյուջեն հաստատված է 429 միլիարդ 150 միլիոն ռուբլի, և ծախսերի գծով 388 միլիարդ 41 միլիոն ռուբլի գումարով, ծախսերի նկատմամբ եկամուտների 41 միլիարդ 109 միլիոն ռուբլի գերազանցումով և, բացի դրանից, ռեսպուբլիկական ու տեղական բյուջեների գծով առ 1-ն հունվարի 1949 թվի փոխանցվող մնացորդներ՝ 2 միլիարդ 637 միլիոն 274 հազար ռուբլի:

Ծախսերի նկատմամբ եկամուտների այսպիսի գերազանցումը, այն ժամանակ, երբ դրամական ռեֆորմի և քարտերի վերացման հետևանքով բնակչությունը միլիարդի օգուտներ է ստացել, իսկ պետությունն իր վրա է վերցրել զոհողությունների մեծ մասը,— վկայում են մեր երկրի հզորության և սովետական ֆինանսական սիստեմի կայունության մասին:

Անցյալ տարվա համեմատությամբ բյուջեի եկամուտներն ավելանում են 44 միլիարդ ռուբլով, իսկ ծախսերը մոտ 27 միլիարդ ռուբլով:

1948 թվականի պետական բյուջեն ցույց է տալիս, թե ինչպիսի հզորության է հասել մեր սոցիալիստական Հայրենիքը: Միևնույն ժամանակ բյուջեն նոր փայլուն հեռանկար-

ներ է բաց անում մեր ժողովրդական տնտեսության առջև։ Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ծախսերը հաստատված են 149 միլիարդ ռուբլի, այսինքն նախորդ տարվա համեմատությամբ 16,3 միլիարդ ռուբլով ավելի։ Միայն կապիտալ շինարարության համար հաստատված է 60,9 միլիարդ ռուբլի։ Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ծախսերի ընդհանուր գումարից, 1948 թվի ժողովրդատնտեսական պլանին համապատասխան, պետական բյուջեի միջոցները հատկացվում են հետևյալ կերպ.

Արդյունաբերությանը— 93,9 միլիարդ ռուբլի կամ 10 միլիարդ ռուբլով ավելի՝ քան անցյալ տարի, գյուղատնտեսությանը— 20 միլիարդ ռուբլի կամ 1947 թ. համեմատությամբ 3,2 միլիարդ ռուբլով ավելի, տրանսպորտին և կապին— 13,8 միլիարդ ռուբլի կամ անցյալ տարվանից 1,8 միլիարդ ռուբլով ավելի։

Սովետական պետությունը տարեց-տարի ավելացնում է սոցիալ-կուլտուրական միջոցառումների ծախսերը։ 1948 թ. պետական բյուջեով այդ ծախսերը նախատեսված են 116,3 միլիարդ ռուբլի, այսինքն անցյալ



տարվա համեմատությամբ 9,8 միլիարդ ռուբլով ավելի։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումներին հատկացված ընդհանուր գումարից 59,1 միլիարդ ռուբլի հատկացվում է լուսավորության ֆինանսավորմանը։ Զգալի միջոցներ են հատկացվում տարրական և միջնակարգ դպրոցների պահպանմանը։ Ընդհանուր կրթության դպրոցներում սովորողների թիվը 1948 թվականին կհասնի 33,2 միլիոն մարդու և կգերազանցի նախապատերազմյան մակարդակից։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը ընթացիկ տարում կկազմի 722 հազար մարդ, այսինքն կգերազանցի նոր հնգամյակի վերջին տարվա առաջադրանքից։ Արհեստագործական ու երկաթուղային ուսումնարաններում և ֆաբգործուսի դպրոցներում 1948 թվականին սովորելու է երկու միլիոն 183 հազար մարդ։ Ընթացիկ տարում մեր երկիրը կստանա մեկ միլիոն 187 հազար որակյալ բանվոր, անցյալ տարվա շրջանավարտներից 368 հազար մարդով ավելի։

Պետական բյուջեից խոշոր գումարներ են հատկացվում ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի մասնագետների որակա-

վորումը բարձրացնելու, գիտահետազոտական հիմնարկների աշխատանքների ծավալման համար և այլն։

Աշխատավորության առողջապահության նպատակով այս տարի բյուջեի ծախսերը կազմում են 20,5 միլիարդ ռուբլի, որի հիման վրա ընդարձակվելու է բուժհիմնարկների, ծննդատների, մանկական հիմնարկների ցանցը։

Պետական սոցիալական ապահովության, այսինքն հիվանդանալու աշխատանքի և պատերազմի հաշմանդամների թոշակները վճարելու համար հատկացվում է 22,6 միլիարդ ռուբլի։

Պետական սոցիալական ապահովության բյուջեյով ծախսերը կազմում են 15.7 միլիարդ ռուբլի։

Ժողովրդական տնտեսության և կուլտուրայի համար պետական բյուջեի ծախսերի այսպիսի աճումը ապահովում է մեր հետպատերազմյան էկոնոմիկայի հետագա զարգացումը։

Մեր երկրի պաշտպանունակության ամրապնդումը միշտ էլ եղել է բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության ուշադրության կենտրոնում։ Այժմ, երբ ատոմային ռումբի «դեմոկրատները» և դոլարի



արքաները՝ ամերիկյան իմպերիալիստները, աշխարհը տիրապետելու իրենց նենգ դիտավորություններով ձգտում են նոր համաշխարհային պատերազմ փաթաթել ժողովուրդների վզին, երբ գաղանային ատելությամբ նրանք հարձակվում են դեմոկրատիայի փարոս Սովետական Միության ու նոր դեմոկրատիայի երկրների վրա, Ամերիկայի Միացյալ Նահանգների բյուջեի 30 տոկոսը հատկացնելով ռազմական նպատակների համար, մեր սոցիալիստական Հայրենիքի պաշտպանունակության ամրապնդումը սովետական քաղաքացիների սրբազան պարտքն է։ Ժողովրդի ընտրյալները Գերագույն Սովետի սեսիայում Զինված ուժերի պահպանության համար 1948 թ. պետական բյուջեով հաստատեցին 66,1 միլիարդ ռուբլի հատկացում, որը կազմում է բյուջեի ծախսերի 17 տոկոսը։ Անցյալ տարվա համեմատությամբ Զինված ուժերի ծախսերը կրճատվում են 2,5 միլիարդ ռուբլով։

Ռեսպուբլիկական ու տեղական տնտեսության զարգացումը և սոցիալ-կուլտուրական միջոցառումների հետագա ծավալումը պայմանավորվում են միութենական ռեսպուբլիկաների բյուջեների աճով։

Միութենական ռեսպուբլիկաների 1948 թ.

պետական բյուջեները Գերագույն Սովետի սեսիան հաստատեց ավելիքան 88 միլիարդ ռուբլի գումարով, որը անցյալ տարվա համեմատությամբ ավելի է 5 և կես միլիարդ ռուբլով։

Միութենական ռեսպուբլիկաների բյուջեների երկու երրորդը՝ 59,4 միլիարդ ռուբլի հատկացվում է սոց-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը։ Ռեսպուբլիկական և տեղական արդյունաբերության, գյուղատնտեսության և բնակարանային-կոմունալ տնտեսության ֆինանսավորմանը հատկացվում է 19,1 միլիարդ ռուբլի կամ միութենական ռեսպուբլիկաների բյուջեների բոլոր ծախսերի 21,7 տոկոսը։

Միութենական ռեսպուբլիկաների բյուջեների այդպիսի ծավալը հետևանք է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման, քաղաքականություն, որն ապահովում է Սովետական Միության մեջ մտնող բոլոր իրավահավասար ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի զարգացումը։

Այդ տեսակետից բնորոշ է Հայկական ՍՍՌ պետական բյուջեն։ Ռեսպուբլիկայի բյուջեով 1948 թվի ծախսերը սահմանված են 1 միլիարդ 56,5 միլիոն ռուբլի, որից ժողո-



վրդական տնտեսության ֆինանսավորմանը հատկացված է 203,6 միլիոն ռուբլի։

Ռեսպուբլիկայի պետական բյուջեով հըսկայական միջոցներ, այն է՝ բյուջեի ամբողջ ծախսային մասի 65 տոկոսից ավելին հատկացվում է սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը։ Հանրակրթական դպրոցների պահպանման համար նախատեսված է 176 միլիոն ռուբլի։ Այդ դըպրոցներում կսովորեն ավելի քան 300 հազար աշակերտ։ Ավելի քան 45 միլիոն ռուբլի հատկացված է ռեսպուբլիկական ենթակայության բարձրագույն ուսումնական հաստատությունների պահպանման համար, որոնցում սովորելու է 14.820 ուսանող։ 1948 թվականին տեխնիկումների ուսանողների թիվը հասնում է 8000 մարդու։ Այս տարվա բյուջեով նախատեսված է պահել կուլտ-լուսավորական հիմնարկների լայն ցանց՝ 1320 ակումբ, կուլտուրայի տներ և գրադարաններ։

1948 թ. առողջապահության համար հատկացված զգալի գումարները ապահովում են բուժ-հիմնարկների ցանցի ընդարձակումը և բուժ-սպասարկման հետագա բարելավումը։

ՍՍՌՄ պետական բյուջեն կոչված է ապահովելու տնտեսության, կուլտուրայի զար-

*դացման և երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման անխափան ֆինանսավորումը։*

*Բյուջեի եկամուտների համարյա ինը տասներորդն ստացվում է սոցիալիստական տնտեսությունից։ Ուստի բյուջեի հաջող կատարումը պահանջում է յուրաքանչյուր ձեռնարկության արտադրական պլանների անթերի կատարում։ Յուրաքանչյուր սովետական քաղաքացու սրբազան պարտականությունն է պատվով կատարել հետպատերազմյան հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքները, սոցիալիստական մրցության հետագա ծավալման միջոցով, հերոսական լենինգրադցիների օրինակով, ապահովել ստալինյան հնգամյակի կատարումը չորս տարում։*

*ՍՍՌՄ 1948 թ. պետական բյուջեն լիովին համապատասխանում է մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման, կուլտուրայի աճման և սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման խնդիրներին։ Մեր պարտիական կազմակերպությունների և ագիտատորների խնդիրն է՝ բոլշևիկյան ճշմարտացի խոսքի միջոցով և անձնական օրինակով կազմակերպել բանվորների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի միտքն ու*



*ուժը 1948 թ. պետական բյուջեն արժանավայել կերպով կատարելու համար։*

*Այդ նպատակով պետք է կազմակերպել և գլխավորել սոցիալիստական կուտակման, արտադրանքի որակի, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման համար մղվող բոլշևիկյան պայքարը։ Պետք է համառ պայքար մղել ֆինանսական կարգապահությունն է՛լ ավելի ուժեղացնելու, տնտեսական հաշվարկը ամրապնդելու համար։ Սովետական յուրաքանչյուր կոպեկը պետք է ծախսվի է՛լ ավելի խնայողաբար ու խելացի կերպով։*

*Սովետական ժողովուրդը մեծ Ստալինի ղեկավարությամբ իր բոլոր ուժերը կգործադրի որպեսզի հաջողությամբ իրականացնի սովետական պետության հզորացման և աշխատավորների նյութական կյանքի հետագա բարելավման ստալինյան պլանը։*

*Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# ԼԱՎՈՐԱԿ ՍԵՐՄԱՑՈՒՆ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ԵՐԱՇԽԻՔՆ Է

Բերքատվության բարձրացման գործում ագրոտեխնիկան ունի բացառիկ կարևոր նշանակություն, սակայն խոշոր արժեք ունի նաև սերմանյութի որակը: Լավորակ սերմացուն նախ և առաջ պետք է ունենա չվնասված սաղմ ու թաղանթ և սննդանյութերի զգալի պաշար: Յուրաքանչյուր կոլխոզ պետք է մտահոգված լինի ունենալու առողջ և ցանքի համար միանգամայն պիտանի սերմանյութ: Վատ հատկություններ ունեցող սերմանյութից բարձր բերք սպասել չի կարելի նույնիսկ ագրոտեխնիկայի լավագույն պայմաններում: Սերմացուի համար գործածվող հատիկները պետք է ունենան նաև բարձր սորտային և ընդհանուր մաքրություն (չլինեն տարբեր սորտերի խառնուրդ, մաքուր լինեն աղբից և առանձնապես մոլախոտերի սերմերից), ունենան բարձր ծլու-



նակություն, մեծ բացարձակ քաշ և այլն:

Սերմացուի մի շարք հատկանիշները ժառանգական են, դրանց մի մասն էլ կախված է բույսերի զարգացման պայմաններից՝ սերմերի հասունությունից, հասակից, բերքահավաքի ձևից, խնամքի ու պահպանման պայմաններից և այլն:

Սերմացուի որակը պարզելու համար յուրաքանչյուր կոլխոզ ցանքից դեռ շատ առաջ և ցանքի նախօրյակին պետք է որոշի հատիկների ծլունակությունը, բացարձակ քաշը, մաքրությունը, առողջ լինելը, տնտեսական պիտանիությունը: Մեծ նշանակություն ունի նաև սերմերի ծագումն ու միատարրությունը որոշելը: Այդ բոլոր հատկանիշները որոշելուց և բարձր գնահատական ստանալուց հետո միայն կարելի է ցանել սերմացուն: Դրա հետ միասին երբեք չպետք է մոռանալ, որ հատիկը անփոփոխ հատկանիշներ ունեցող օրգանիզմ չէ, ընդհակառակը, երբ փոխվում են հողային և կլիմայական պայմանները, հողի մշակման և բույսերի խնամքի ձևերն ու եղանակները, ապա այդ փոփոխվող պայմաններում աճող ու զարգացող օրգանիզմը ժամանակի ընթացքում կրում է մի շարք բարդ փոփոխություններ, որոնք անդրադառնում են նրա

վրա և բարձրացնում կամ իջեցնում նրա արժանիքները։ Այդ փոփոխությունները նախ և առաջ անդրադառնում են հատիկի ծլունակության վրա, որը սերմացուի կարևորագույն հատկանիշներից մեկն է։

Սերմացուի կարևոր, ագրոնոմիական տեսակետից մեծ արժեք ներկայացնող հատկանիշներն են՝

**Ծլունակություն.**— Ծլունակությունը վերին աստիճանի անկայուն, տատանվող հատկություն է և կախված է սերմի հասակից, նրա՝ մեջ եղած խոնավության տոկոսից, լավ կամ վատ պահելուց, հասունության աստիճանից և այլն։

Վաղ հավաքված սերմերը, երբ դեռ չի վերջացել հասունացման ու չորացման պրոցեսը, հեշտ են կորցնում իրենց ծլունակությունը, և անպետք են դառնում իբրև սերմացու։ Հաշվի պետք է առնել նաև այն կարևոր հանգամանքը, որ սերմերը որքան երկար են պահվում, այնքան ավելի է պակասում նրանց ծլունակությունը։

Սերմերի ծլելու սկիզբը համարյա չի փոխվում նրանց հասակի համեմատ։ Սակայն ծլման տևողությունը երկարում է, երբ սերմը երկար ժամանակ է պահվում։ Գործնականում սերմացուն մեկ-երկու տարուց



ավել չպիտի պահել։ Բացառիկ դեպքերում միայն կարելի է դրանից մեծ հասակ ունեցող սերմեր ցանել։

Սերմերի լրիվ ծլունակությունը, որն արտահայտվում է տոկոսներով, հացաբույսերի մեծամասնության համար որոշվում է յոթ օրվա ընթացքում։ Դրանից ավելի ուշ ծլած սերմերը պակաս արժեք են ներկայացնում, որովհետև նրանցից ստացված բույսերը հետագայում ավելի թույլ են աճում և տալիս են ավելի պակաս բերք։

Լավ սերմացուն պետք է ունենա 100 տոկոսային ծլունակություն, և յուրաքանչյուր կոլխոզ պետք է ձգտի այդպիսի սերմացուով ցանք կատարել։

Ծլունակությունից բացի, սերմացուի գնահատության համար նշանակություն ունի նաև նրա ծլման էներգիան։ Սրանով որոշվում է սերմերի համերաշխ ծլելու հատկությունը, որն իր հերթին ապահովում է ապագա բույսերի ուժեղ աճը և բերքի միաժամանակ հասունանալը։ Ծլունակության էներգիայի չափանիշ հացահատիկների համար ծառայում է առաջին երեք օրվա ընթացքում ծլած սերմերի տոկոսը։

**Խոնավություն.**— Այս կամ այն տեսակի սերմանյութ վերցնելու ժամանակ պետք է

մեծ ուշադրություն դարձնել նաև սերմերի խոնավության վրա, որը հաճախ որոշում է նրանց ծլունակությունը։ Դա բացատրվում է նրանով, որ սերտ կապ գոյություն ունի խոնավության և սերմի շնչառության միջև։ Սերմի մեջ եղած խոնավության ամեն մեկ ավելորդ տոկոսը խիստ կերպով ուժեղացնում է նրա շնչառությունը։ Դրա հետևանքով պակասում է սերմի մեջ եղած սննդանյութերի պաշարը, որը անհրաժեշտ է նորածիլ բույսի համար։ Բացի դրանից, կարող է տեղի ունենալ ջերմության ուժեղ բարձրացում, որի հետևանքով սաղմը կմեռնի։

Վատ է ազդում սերմի ծլունակության վրա նաև սերմի արտադրած ածխաթթու գազը։ Վերջապես պետք է խստորեն հաշվի առնել նաև այն հանգամանքը, որ խոնավ և տաք պայմաններում կարող են զարգանալ միկրոօրգանիզմները, որոնք մյուս աննպաստ պայմանների հետ միասին կարող են սերմացուի ոչնչացման պատճառ դառնալ։

**Հասունությունը.**— Մեծ ուշադրություն պետք է դարձնել նաև սերմերի հասունության վրա։ Պետք է հաշվի առնել այն կարևոր հանգամանքը, որ շուտ հավաքած, դեռ



չհասունացած կամ կիսահասուն սերմերը հետագա պահպանման ժամանակ շատ շուտ են կորցնում իրենց ծլունակությունը, կամ ցանելիս տալիս են թույլ բույսեր։ Այդ իսկ պատճառով որպես սերմանյութ պետք է գործադրել միանգամայն հասուն, առողջ և սննդանյութերով հարուստ հատիկներ։

**Բացարձակ կշիռը.**— Մեծ նշանակություն պետք է տալ սերմերի բացարձակ կշռին և համասարվածությանը (միատարր լինելուն)։ Սերմերի բացարձակ կշիռը լավագույն կերպով ցույց է տալիս, թե սննդանյութերի ինչպիսի պաշար կա հատիկների մեջ։ Եթե հաշվի առնենք, որ բույսն իր զարգացման սկզբում ապրում է սերմի հատիկի մեջ եղած սննդանյութերի հաշվին, ապա պարզ կլինի սերմանյութի բացարձակ կշռի կարևոր նշանակությունը։ Որքան տվյալ սերմացուի հատիկների մեջ սննդի պաշարը մեծ լինի, այնքան էլ նորմալ պայմաններում ավելի լավ կաճեն բույսի երիտասարդ ծիլերը, հետևապես հեշտ էլ կկարողանան դիմանալ արտաքին միջավայրի աննպաստ պայմաններին՝ երաշտին, ցրտին, միջատների և հիվանդությունների պատճառած վնասին և այլն։

Բացարձակ կշռի մեծությունը որոշում

է նաև սերմերի մեծությունը և լցվածությունը: Կիսահաս, չմշակված և մանր սերմերը մեծ բացարձակ կշիռ ունենալ չեն կարող: Սերմերի բացարձակ կշիռը ենթակա է ուժեղ տատանումների: Դրա հիմնական պատճառներն են՝ հողի մշակումը, ցանքերի խնամքը, պարարտացումը, կլիմայական և այլ պայմանները:

Սերմացուի գնահատման խնդրում մեծ տեղ պետք է տալ նաև սերմերի համասարվածությանը, երբ նրանք ունենում են քիչ թե շատ միանման հատկություններ՝ ծլում են միաժամանակ, հասնում են միաժամանակ և տալիս են բարձր բերք: Խայտաբղետ հատկություններ ունեցող սերմացուն տալիս է անհավասար ծլունակություն, տարբեր աճեցողություն ունեցող բույսեր, որի հետևանքով հասունացումը ևս տեղի է ունենում տարբեր ժամանակ, որը խանգարում է բերքահավաքի մեքենաների աշխատանքը, պատճառ է դառնում մեծ կորուստների և բերքի անկման: Ասածներից միանգամայն պարզ է, որ իբրև սերմացու պետք է ընտրել միանգամայն հավասար հատկություններ ունեցող հատիկներ:

**Արտաքին տեսքը**.— *Սերմերի արտաքին տեսքը նույնպես կարող է որոշ չափով ցույց*



տալ սերմերի պիտանիությունը ցանքի համար: Լավ սերմացուն պետք է լինի լցված, իր մակերեսի վրա չունենա ճեղքեր, բացի դրանից նա չպետք է իր մեջ պարունակի վնասված, կոտրտված սերմեր, ունենա նորմալ գույն, փայլ, համ և հոտ: Աննորմալ, խոնացած, մգլած, գույնը փոխած սերմացու ոչ մի դեպքում չպետք է գործադրել ցանքի համար: Սակայն արտաքին հատկանիշները միշտ էլ սերմերի լավորակության լրիվ և անսխալ չափանիշ լինել չեն կարող: Ուստի սերմացուի լրիվ և ճիշտ գնահատման համար ամեն անգամ անհրաժեշտ է կատարել նրա լրիվ անալիզը սերմ ստուգող լաբորատորիաներում:

**Մաքրությունը**.— *Սերմերի ներքին հատկանիշների հետ չկապված, բայց սերմացուի գնահատման տեսակետից խոշոր նշանակություն ունեցող հատկություն է նրա մաքրությունը: Սերմացուի ընդհանուր մաքրությունը տարբեր է սորտային մաքրությունից: Սովորական կամ ֆիզիքական աղբոտություն ասելով պիտի հասկանալ նրա մեջ եղած կենդանի աղբը (մոլախոտերի սերմեր, այլ կուլտուրական բույսերի սերմեր) և մեռած աղբը (հող, ավազ, հարդ, դեֆեկտիվ, կոտրված, վնասված սաղմ ունեցող հատիկ-*

ներ և այլն)։ Մնացած աղբը պակասեցնում է ցանվող սերմի քանակը և ավելորդ բեռ է փոխադրության համար, իսկ կենդանի աղբի մեջ կարող են լինել սուր վնասակար, թունավոր և նույնիսկ կարանտին մոլախոտերի սերմեր, որոնց ներկայությունը բոլորովին անթույլատրելի է սերմացուի մեջ։

Սերմանյութի թվարկած կարևոր հատկանիշներից դժվար չէ գալ այն եզրակացության, որ յուրաքանչյուր կոլխոզ, յուրաքանչյուր տնտեսություն, հացահատիկային կուլտուրաներից, ինչպես և այլ տեսակի բույսերից բարձր բերք ստանալու համար, ագրոտեխնիկական և այլ բնույթի միջոցառումների անթերի կիրառումից բացի, պետք է խոշոր ուշադրություն դարձնի նաև սերմացուի որակի վրա, ըստ որում յուրաքանչյուր սերմանյութ պետք է անպայման ենթարկել անպայմանորեն և իբրև սերմացու գործադրել միայն բարձր ծլունակություն, մեծ բացարձակ կշիռ, նորմալ արտաքին տեսք, պետության կողմից սահմանված տնտեսական պիտանիություն ունեցող, առողջ և միանգամայն մաքուր սերմացու։

Պրոֆ. Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության այս տարվա փետրվարի 2-ի Հրամանագրով, մեր Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության 15 առաջավորներ, ցորենի բարձր բերք ստանալու համար, արժանացան բարձր պարգևի — Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։ Դրանք են՝ օղակավարներ Ա. Ասատրյանը, Ս. Վարդանյանը, Խ. Վարդանյանը, Խ. Դավթյանը, Հ. Ջաղացպանյանը, Ս. Ենգոյանը, Մ. Մանուկյանը, Ս. Միսակյանը, Ս. Հովհաննիսյանը, Դ. Սարգսյանը, Ս. Ումրշատյանը, Ս. Հունանյանը, կոլխոզի նախագահներ՝ Հ. Գրիգորյանը, Մ. Սարգսյանը և Ս. Վարդանյանը։

Գյուղատնտեսության 18 առաջավորներ պարգևատրվել են Լենինի շքանշանով, 24 մարդ՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով, 40 մարդ՝ «Աշխատանքային արիու-

թյան համար» և 7 մարդ՝ «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով։

Շարքային կոլխոզնիկներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելը և շքանշաններով ու մեդալներով պարգևատրելը մեծ և արժանի գնահատականն է այն անձնվեր աշխատանքի, որ կատարեցին Սովետական Հայաստանի կոլխոզնիկներն անցյալ գյուղատնտեսական տարում։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը դարձնելով իր աշխատանքի մարտական ծրագիր, մեր Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը բարձր բերքի համար մղվող պայքարում ձեռք բերեց լուրջ հաջողություններ։ Կոլխոզային դաշտերի հարյուրավոր ու հազարավոր աշխատավորներ գերակատարեցին պետական առաջադրանքները հացահատիկի և տեխնիկական կուլտուրաների գծով, զգալիորեն բարձրացրին բերքատվությունը և ժամանակից 45 օր շուտ կատարեցին պետական պարտավորությունները։

Ո՞րն է սոցիալիստական հողագործության առաջավորների հաջողության գաղտնիքը։ Հաջողության հիմնական նախապայմանն է աշխատանքի լավ կազմակերպումը, ագրո-



տեխնիկական կանոնների ճիշտ կիրառումը, կոլխոզային դաշտերի բարձրորակ մշակումը։ Այս պայմանների անշեղ կիրառումն է, որ ապահովեց Նոր Բայազետի և Ախտայի շրջանների գյուղատնտեսության առաջավորների նվաճումները, որոնք նշվեցին բարձր պարգևներով։

Պարգևատրվածների մեջ իրենց արժանի տեղն են գրավում Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի «Սպարտակ» կոլխոզի աշխատավորները։ Բարձր բերք աճեցնելու համար այստեղ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է շնորհվել 7 առաջավոր կոլխոզնիկների։ Կոլխոզն անցյալ տարի մոտ 1000 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 12 ցենտներ 45 կիլոգրամ բերք, իսկ 6 օղակ ստացան 30 ցենտներից ավելի։

Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներից յուրաքանչյուրն ունի աշխատանքի հարուստ փորձ, որը պետք է օրինակ ծառայի գյուղատնտեսության բոլոր աշխատողների համար նրանց ամենօրյա աշխատանքում։

Ի՞նչպես հասան այդ առաջավորները բարձր կոչման։ Կարմիր գյուղի «Սպարտակ»

կոլխոզի նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Սարգիս Վարդանյանը հատուկ ուշադրություն է դարձնում աշխատանքի կազմակերպմանը։ Դեռ անցյալ ձմռանից նա բրիգադավարների ու օղակավարների հետ միասին դասավորել էր աշխատող ձեռքերն այն հաշվով, որ ոչ մի կոլխոզնիկ դուրս չմնար դաշտային աշխատանքներից և գարնան դաշտային աշխատանքների հենց սկզբից ամեն մի կոլխոզնիկ գիտեր իր անելիքը։

— Ես, գյուղատնտեսական աշխատանքի երկար տարիների փորձ ունեմ։ Անցյալ գյուղատնտեսական տարում ես կրկին անգամ համոզվեցի, որ որքան շուտ, սեղմ ժամկետում ու բարձր որակով է կատարվում վարն ու ցանքը, այնքան ավելի շատ բերք է ստացվում,— ասում է ընկ. Վարդանյանը։

1947 թվականի գարնանացանի համար վարն արագացնելու նպատակով նա բոլոր բրիգադներում և օղակներում լայնորեն տարածեց անհատական գործարքը, որը տվեց դրական արդյունք—յուրաքանչյուր մաճկալ օրական վարեց 0,7—0,8 հեկտար, պլանով սահմանված 0,6 հեկտարի փոխարեն։



Որպեսզի վարն ավելի արագացվեր, Վարդանյանը մեկ հնար ևս գտավ։ Կոլխոզնիկները, ինչպես և լծկանը դաշտ գնալու և վերադառնալու համար օրական անցնում էին մոտ 20 կիլոմետր ճանապարհ։ Ժամանակը տնտեսելու և այդ երթևեկության հաշվին վարն արագացնելու համար, Վարդանյանն օգտագործեց «Մանիչար» կոչվող դաշտամասում եղած գոմերը, որտեղ հարմարություններ ստեղծվեցին լծկանների գիշերային խնամքի ու կերակրման համար, ինչպես նաև գիշերանոցներ կոլխոզնիկների համար։ Այդ միջոցառումը հնարավորություն տվեց 28 տոկոսով բարձրացնելու վարի արտադրանքը, որի շնորհիվ կոլխոզը 12 աշխատանքային օրում ավարտեց հացահատիկային կուլտուրաների ցանքը։

Գյուղատնտեսական աշխատանքները չեն սիրում ձգձգում։ Ամեն մի գործ պետք է կատարել ժամանակին, ագրոտեխնիկական լավագույն ժամկետում։ Այդ բանը Ս. Վարդանյանի ուշադրությունից չի վրիպում։

— Գարնանացանին զուգընթաց,— ասում է նա,— մեզ մոտ կատարվում էր քարերի հավաքումը դաշտերից, պայքարը գյուղատնտեսության վնասատուների դեմ, առու-

ների մաքրումը, աշնանացանի փոցխումը և պարարտանյութի փոխադրումը դաշտ։

Ընկ. Ս. Վարդանյանը հատուկ ուշադրություն է նվիրում օղակներին։ Նրա ղեկավարած կոլխոզի յուրաքանչյուր օղակը լավ գիտե իր մշակած հողամասը։ Վարի, ցանքերի մշակման և բերքահավաքի ժամանակ օղակներում կատարվում է աշխատանքի բաժանում։ Եվ պատահական չէ, որ օղակավարներից 6 հոգի աշխատանքի ճիշտ կազմակերպման, ագրոտեխնիկայի կիրառման շնորհիվ նվաճեցին բարձր բերք և արժանացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։

Եթե այսօր ամենուրեք խոսում են «Սպարտակ» կոլխոզի ստացած բարձր բերքի մասին, ապա այդ հետևանք է նաև նրան, որ կոլխոզի նախագահ ընկ. Ս. Վարդանյանը ամենայն խստությամբ հետևում է ցանքաշրջանառության ճիշտ կատարմանը։ Լավ ծանոթ լինելով ցանքաշրջանառության տեխնիկային, նա հետևում է, որ յուրաքանչյուր դաշտում ցանվի այն կուլտուրան, որը նախատեսնված է ցանքաշրջանառության պլանով։ Ճիշտ ցանքաշրջանառություն կիրառելու համար ամենից առաջ



անհրաժեշտ է խոտաբույսերի սերմացու։ Ընկ. Վարդանյանը 1946 թվականին ոչ մի բանի առաջ կանգ չառնելով ձեռք բերեց խոտաբույսերի սերմացու և լրիվ կատարեց խոտի ցանքի պլանը։ 1947 թվականին նրա ղեկավարած կոլխոզն ստացավ խոտաբույսերի այնքան սերմացու, որ կարող էր օգնել նաև մի այլ կոլխոզի։ Այսպիսով ցանքաշրջանառության կիրառումը մի կողմից նպաստում է բերքատվության բարձրացմանը, մյուս կողմից ստեղծում կերի ամուր բազա հանրային անասնաբուծության զարգացման համար։

51 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից 31,23 ցենտներ ցորեն ստանալու համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը բարձր բերքի ականավոր վարպետ ընկ. Սարգիս Վարդանյանին շնորհել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

***

Փորձեցեք մտնել Նոր Բայազետի շրջանի Հացառատ գյուղը և առաջին իսկ հանդիպած մարդուց հարցնել Մեխակ Մանուկյանի մասին. նա ձեզ իսկույն կասի— Մեխակը բարձր բերքի վարպետ է, անվանի

կոլխոզնիկ, մենք բոլորս հարգում ենք նրան։

Եվ իրոք, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մեխակ Մանուկյանը արժանի է հարգանքի, որովհետև նա կատարելով մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը, 9 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 32,27 ցենտներ ցորեն։

Մեխակ Մանուկյանն իր օղակով մշակում է աշնանացան։ Ցանքի համար նա նախօրոք կատարում է բարձրորակ ցել, ապա այն լավ մշակում, պարարտացնում և նոր միայն սկսում ցանքը։ Նա ցանքը կատարում է ոչ ուշ, քան օգոստոսի 20—25-ը, որը ագրոտեխնիկական լավագույն ժամկետն է։ Ցանքը կատարվում է բացառապես շարքացանով և յուրաքանչյուր հեկտարի վրա ցանվում է 2 ցենտներ «Ուկրաինկա» տեսակավոր սերմացու, որը լեռնային կլիմայական պայմաններում բարձր բերք է տալիս։ Ժամանակին կատարված ցանքը լավ աճում է և մինչև ձյուն գալը թփակալվում ու դիմացկուն դառնում ցրտին։ Ուշ աշնանը Մանուկյանն ամբողջ ցանքի վրա շաղ է տալիս տեղական պարարտանյութ։ Դա ունի երկու նշանակություն— մեկ, որ ծառայում է որպես լրացուցիչ սնուցում, մյուսը՝ որ ցանքը



պաշտպանում է ցրտահարությունից։

Վաղ գարնան, երբ ձյունն սկսում է հալչել, Մանուկյանը մանրամասն ստուգում է ցանքի վիճակը։ Եթե որևէ տեղում ջուր է կուտակված լինում, նա դաշտն իսկույն ազատում է դրանից, որպեսզի գիշերը չսառչի ու չվնասի բույսերին։ Հողի կեղևը քիչ չորանալուց հետո Մանուկյանը գործի է դնում փոցխերը և ամբողջ ցանքատարածությունը փոցխում։ Պատահում են տեղեր, որտեղ հողի կեղևը ավելի ամուր ու հաստ է լինում։ Այդպիսի տեղերը նրանք փոցխում են երկու անգամ և ուշադրությամբ հետևում բույսի աճման պրոցեսին։

Մեկ անգամ Մանուկյանը նկատեց (իսկ այդ անցյալ տարվա գարնանն էր), որ իր մշակած աշնանացանի մոտ կես հեկտար տարածության վրա, բույսերը լավ չեն աճել, նվազ են։ Նա իսկույն հավաքեց օղակի անդամներին, պարարտանյութ ձեռք բերեց ու լրացուցիչ սնուցում կատարեց։

— Սրանք նման են այն նվազ աճած մատղաշ կենդանիներին, որոնք հատուկ խնամք են պահանջում,— ասաց Մեխակը և ցույց տվեց, թե ինչպես պետք է հողը նարից փխրեցնել և պարարտանյութ շաղ տալ։

*Օղակավարի օրինակով աշխատել սկսեցին մյուսները և կարճ ժամանակում գործը ավարտեցին: Տեղացող հորդ անձրևից հետո, այդ տարածության վրա եղած բույսերը փարթամորեն աճեցին:*

*Նախքան բույսերի խողովակակալելը, Մանուկյանը կատարեց մոլախոտերի քաղհան: Այդ միջոցներով նա աճեցրեց առատ բերք և առաջնություն շահեց սոցիալիստական մրցության մեջ:*

***

*Նման աշխատանքի հարուստ փորձ ունեն նաև Սոցիալիստական Աշխատանքի մյուս Հերոսները, որոնք այժմ կրկնապատկված եռանդով գործի են անցել ստալինյան հնգամյակի երրորդ տարում ավելի բարձր բերք ստանալու համար:*

*Փորձի ուժը—մեծ ուժ է, ուստի գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողների մեջ պետք է լայնորեն մասսայականացնել բարձր բերքի ականավոր վարպետների աշխատանքի հարուստ փորձը, նորանոր հաջողությունների հասնել՝ հանուն մեր մեծ հայրենիքի է՛լ ավելի ծաղկման ու բարգավաճման:*

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 30-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ի պաշտպանություն սոցիալիստական հայրենիքի: *Քաղհրատ, 1940 թ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին: *Քաղհրատ, 1941 թ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին: *Հայպետհրատ, 1946 թ.:*

Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թվականի փետրվարի 9-ին: *Հայպետհրատ, 1946 թ.:*

ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ: Համառոտ դասընթաց, 7—8 գլուխները: *Հայպետհրատ, 1946 թ.:*

ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ: Համառոտ կենսագրություն, *2-րդ հրատարակություն: Հայպետհրատ, 1947 թ.:*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը: *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1947 թ. նոյեմբերի 6-ին։ «Սովետական Հայաստան», 7 նոյեմբերի, 1947 թ.։*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Լենինը, Ստալինը և Կարմիր Բանակը: *Հայկուսհրատ, 1935 թ.։*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ստալինը և Կարմիր Բանակը: *Քաղհրատ, 1941 թ.։*

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Միջազգային դրության մասին: *Զեկուցում մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների 1947 թ. սեպտեմբերի վերջերին Լեհաստանում տեղի ունեցած ինֆորմացիոն խորհրդակցությունում։ «Սովետական Հայաստան» 24 հոկտեմբերի, 1947 թ.։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ.— Լենինի գաղափարները լուսավորում են կոմունիզմի ուղին: *Զեկուցում Մոսկվայում, Վ. Ի. Լենինի մահվան 24-րդ տարեդարձին նվիրված սգո հանդիսավոր նիստում, 1948 թվականի հունվարի 21-ին։ «Սովետական Հայաստան», 22 հունվարի, 1948 թ.։*